## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԲ Կենտկոմ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։




---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ

### Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*Մեր հիասքանչ Հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը աշխարհում միակ երկիրն է, որտեղ աշխատավորներն են տնօրինում իրենց բախտը, ուր երկրի իշխանության գերագույն օրգանն ընտրվում է ժողովրդի կողմից։*

*Սովետական ընտրական սիստեմը ամենադեմոկրատականն է աշխարհում, որովհետև մեր երկրի պետական իշխանության գերագույն օրգանի՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի, ինչպես նաև աշխատավորների դեպուտատների բոլոր Սովետների դեպուտատների ընտրությունները կատարում են իրենք աշխատավորները, բոլոր ընտրողները՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։*

*ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 135-րդ հոդվածի հիման վրա, դեպուտատների ընտրություն-*





ներն ընդհանուր են՝ 18 տարեկանի հասած ՍՍՌՄ բոլոր քաղաքացիները, անկախ ռասայական ու ազգային պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից, իրավունք ունեն մասնակցելու ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրություններին, բացի խելագարներից և այն անձերից, որոնք դատարանի կողմից դատապարտված են ընտրական իրավունքների զրկումով։

Այդպիսի ազատ և լայն դեմոկրատական ընտրություններ կարող են լինել միայն Սովետների երկրում, ուր ամբողջ իշխանությունը պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորներին, որտեղ վաղուց վերացված է մարդու շահագործումը մարդու կողմից, լիկվիդացված են շահագործող դասակարգերը, իրականացված է հողի, անտառների, ֆաբրիկաների, գործարանների և արտադրության այլ գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը, որտեղ ընդմիշտ վերացված է գործազրկությունն ու աղքատությունը։

Այդպիսի ազատ և լայն դեմոկրատական սկզբունքներով ընտրություններ կարող են



լինել միայն մեր երկրում, որտեղ քաղաքացիներին տրված են մեծ իրավունքներ երկրի կառավարման գործում, օրենսդրական կարգով ապահովված են այդ իրավունքները և ստեղծված են նպաստավոր պայմաններ այդ իրավունքները կենսագործելու համար։

Կապիտալիստական երկրներում շահագործող դասակարգերը, որոնց ձեռքում է գտնվում երկրի ղեկը, ստեղծել են ամեն տեսակ խոչընդոտներ, որպեսզի աշխատավոր մարդկանց հեռու պահեն երկրի կառավարման գործից։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ում կոնգրեսի ընտրություններին մասնակցելու համար ընտրողը պետք է ունենա նստակեցության ցենզ, այսինքն՝ ընտրողից պահանջվում է, որ նա որոշակի սահմանված ժամկետով լինի որևէ նահանգի մշտական բնակիչ։ Ընտրական այդ ցենզը փաստորեն ուղղված է սեզոնային բանվորների և գործազուրկների դեմ։ Թե՛ սեզոնային բանվորները և թե՛ գործազուրկներն աշխատանք փնտրելու և սովից չմեռնելու համար ստիպված են տեղից-տեղ չվել, որով և զրկվում են ընտրություններին մասնակցելու իրավունքից։ Կամ, նույն ԱՄՆ-ում սահմանված է ընտրական հարկ, ըստ որի, եթե որևէ քա-

ղաքացի ցանկանում է մասնակցել ընտրություններին, պարտավոր է վճարել հարկ։ Այդ նույնպես ուղղված է աշխատավորների դեմ, հատկապես բանվորների, բատրակների և մանր ծառայողների դեմ, որոնք շատ քիչ վարձատրություն են ստանում և չեն կարող վճարել ընտրական հարկը։ ԱՄՆ-ի 13 նահանգներում ընտրական իրավունքներից զրկված են բոլոր թոշակառուները և չքավորները։

ԱՄՆ-ում ընտրողներին ընտրական իրավունքից զրկելու, նրանց իրավունքները սահմանափակելու վերաբերյալ արգելքների թիվը հասնում է 50-ի։ Այդ է պատճառը, որ միայն 1946 թվականի կոնգրեսի ընտրությունների ժամանակ 14 միլիոն նեգրերից ընտրություններին մասնակցեցին միայն 100 հազար հոգի։ Նեգրերի, գործազուրկների, բանվորների հետ միասին, մեծ թվով զինծառայողներ նույնպես զրկվեցին ընտրական իրավունքից։

Բուրժուական մի շարք երկրներում կրթական ցենզի պատճառով հազարավոր ընտրողներ զրկված են ընտրական իրավունքից։ Օրինակ, Փորթուգալիայում բնակչության 52 տոկոսը զրկված է ընտրական իրավունքից



միայն այն բանի համար, որ չունի համապատասխան կրթություն։

Ինչպես տեսնում ենք, բուրժուական ընտրական սիստեմը խտրականություն է դնում քաղաքացիների մեջ, ոչնչի է վերածում աշխատավորների իրավունքները, սահմանափակում է նրանց դեմոկրատական ազատությունները։ Նա խոշոր տարբերություն է դնում կրթված և ոչ-կրթված, նստակյաց և ոչ-նստակյաց, ունևոր և աղքատ ընտրողների միջև, զրկելով ընտրական իրավունքից ոչ-կրթված, ոչ-նստակյաց և աղքատ ընտրողներին։

Մեր ընտրական սիստեմը, ընդհակառակը, ելնում է այն բանից, որ բոլոր ընտրողներն իրենց իրավունքներով հավասար են։ Մեզ մոտ ո՛չ թե գույքային դրությունը, ո՛չ թե ազգային ծագումը, ո՛չ թե սեռը, ո՛չ թե պաշտոնական դրությունը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակությունները ու անձնական աշխատանքն են որոշում նրա դրությունը հասարակության մեջ։

ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 136-րդ հոդվածով սահմանված է, որ դեպուտատների ընտրությունները հավասար են, յուրաքանչյուր քաղաքացի ունի մեկ ձայն, բոլոր քաղաքացիները ՍՍՌՄ Գերագույն Սովետի

ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով։ Այդ նշանակում է, որ մեզ մոտ բոլոր ընտրողներն ունեն հավասար իրավունք, ոչ ոքի չի տրվում որևէ արտոնություն մյուսների նկատմամբ, ոչ մի ընտրողի իրավունքը չի սահմանափակվում։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրությամբ ընտրողների ցուցակների մեջ են մտցվում մինչև ընտրությունների օրը 18 տարեկանի հասած այն բոլոր քաղաքացիները, որոնք ունեն ընտրական իրավունք և ցուցակները կազմելու պահին ապրում են (մշտապես կամ ժամանակավորապես) տվյալ Սովետի տերիտորիայում, որ ընտրողներից ոչ ոք չի կարող մտցվել ավելի, քան մեկ ընտրական ցուցակի մեջ։

Բայց այդպես չէ բուրժուական երկրներում։ Այնտեղ շահագործող դասակարգերի ներկայացուցիչներն օգտվում են հատուկ արտոնություններով, նրանք ընտրությունների ժամանակ ունեն ո՛չ թե մեկ ձայն, այլ մի քանի ձայն։ Օրինակ, Անգլիայում բարձրագույն կրթություն ունեցող անձինք, որոնք ունեն անշարժ կայք, կարող են ընտրություններին մասնակցել ընտրական երկու օկրուգներում, այսինքն՝ ունենալ երկու ձայն։ Իսկ Անգլիայում բարձրագույն կրթու-



թյուն և, մանավանդ, անշարժ կայք ունեն կապիտալիստական տարրերը, և նրանք էլ վայելում են այդ արտոնությունը։ Աշխատավորական լայն մասսաները սեփականազրկված են և չունեն հնարավորություն ոչ թե բարձրագույն, այլ նույնիսկ տարրական կրթություն ստանալու համար։

ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 139-րդ հոդվածի հիման վրա մեզ մոտ դեպուտատների ընտրություններն ուղղակի են, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրությունը քաղաքացիները կատարում են անմիջականորեն, ուղղակի ընտրությունների միջոցով։ Աշխատավորների դեպուտատների բոլոր Սովետների ընտրությունները, սկսած գյուղական ու քաղաքային Սովետից՝ մինչև ՍՍՌՄ Գերագույն Սովետը, քաղաքացիները կատարում են անմիջականորեն, ուղղակի ընտրությունների միջոցով։

Այդպիսի ազատ և դեմոկրատիկ ընտրությունները սերտ կապ են ստեղծում ընտրողների և դեպուտատների միջև։ Մանավանդ, երբ մեր ընտրողները իրավունք ունեն ժամկետից շուտ ետ կանչել իրենց դեպուտատներին, եթե նրանք չեն արդարացնում իրենց։

Կապիտալիստական երկրների ընտրողնե-

ըր զրկված են այդպիսի հիանալի իրավունքից։ Նրանց մոտ դեպուտատների և ընտրողների միջև գոյություն ունեն տարօրինակ հարաբերություններ։ Քանի դեռ ընտրություններ են տեղի ունենում, դեպուտատները ամեն տեսակ խոստումներ են տալիս ընտրողներին, քծնում նրանց, երդվում են ազնիվ լինել և այլն։ Բայց հենց որ ընտրություններն ավարտվում են, փոխվում են հարաբերությունները նրանց միջև։ Դեպուտատըն իրեն զգում է ժողովրդից, իր ընտրողներից անկախ։ Նա կարող է դավաճանել ընտրողներին՝ ժողովրդին։ Նրանց շահերի փոխարեն պաշտպանել իր անձնական շահը, ծառայել կապիտալիստների օգտին։ Եվ այդպես էլ լինում է։ Բուրժուական պառլամենտներում բազմաթիվ դեպուտատներ, չնայած այն հանգամանքին, որ իրենք ընտրրվել են ժողովրդի կողմից, քվեարկում և ընդունում են հակաժողովրդական օրենքներ։ Նրանց ընտրողները չեն կարող ետ կանչել, որովհետև զրկված են նման իրավունքից։

Մեզ մոտ, ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 140-րդ հոդվածի հիման վրա, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրությունների ժամանակ քվեարկությունը գաղտնի է։



Կապիտալիստական երկրներում ընտրությունները տեղի են ունենում դասակարգային պայքարի ու թշնամության, ռեակցիոն կառավարողների կողմից ընտրողների վրա գործադրվող ճնշման պայմաններում։ Կապիտալիստական տարրերն ամեն տեսակ ճնշում են գործ դնում ընտրողների վրա, նրանցից ձայներ կորզելու համար։ Ուստի այնտեղ չի կարող լինել գաղտնի ընտրություն, որովհետև ընտրողները զրկված են ազատ կերպով իրենց կամքը արտահայտելու իրավունքից։

Ընտրությունները մեր երկրում անցնում են բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի փոխադարձ համագործակցության, վստահության, բարեկամության պայմաններում, որովհետև մեզանում չկա ճնշում, չկա շահագործում, չկան շահագործող դասակարգեր, որ ճնշում գործադրեն ժողովրդի վրա՝ նրա կամքը խեղաթյուրելու նպատակով։ Մեզ մոտ ընտրողների ընտրական իրավունքը պաշտպանվում է օրենքով։

Սովետական ընտրական սիստեմն ամենադեմոկրատականն է աշխարհում, որովհետև նա լիակատար կերպով ապահովում է բոլոր ընտրողների մասնակցությունը պետական իշխանության բարձրագույն օրգա-

նի և մյուս բոլոր օրգանների ընտրություններին։

Ընտրողներին ուղղված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Դիմումի մեջ ամենայն պարզությամբ ցույց է տրված, թե ինչպես սովետական սոցիալիստական կարգը ընդմիշտ ոչնչացրել է մարդու կողմից մարդու շահագործումը, իշխանության գլուխ է կանգնեցրել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և աշխատավոր ինտելիգենցիայի ծոցից դուրս եկած լավագույն մարդկանց, ստեղծել է ամբողջ սովետական հասարակության բարոյա-քաղաքական անխորտակելի միասնություն։ Այդ հասարակարգը աշխարհում ամենադեմոկրատական հասարակարգն և պետական կարգն է։ Սովետական պետության կառավարմանը մասնակցում են ժողովրդական ամենալայն մասսաները։ Մեր ժողովուրդը լավագույններից լավագույն իր որդիներին ու դուստրերին ընտրում է պետական իշխանության բարձրագույն օրգանում՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետում։

Կոմունիստական պարտիան անդուլ կերպով զարգացնում է մեր սովետական, սոցիալիստական դեմոկրատիան, միլիոնավոր աշխատավորներ ակտիվ կերպով մասնակցում են պետության կառավարման գործին։ Պարտիան անդուլ կերպով ամրապնդում է սոցիալիստական օրինականությունը, որը պահպանում է մեր Հայրենիքի քաղաքացիների՝ ՍՍՌՄ Կոնստիտուցիայով վավերացված սրբազան և անխախտ իրավունքները։



Մոտենում է ընտրությունների օրը։ Ընտրողները միահամուռ կերպով իրենց ձայնը կտան կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին։ Դրանով իսկ ընտրողները կքվեարկեն Կոմունիստական պարտիայի քաղաքականության օգտին, նրա առաջադրած խնդիրների կենսագործման օգտին։

---

## ԸՆԴԴԵՄ ԳԱՂՈՒԹԱՅԻՆ ՃՆՇՄԱՆ, ՀԱՆՈՒՆ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ

ՅԱ. ԳՐԻՇՉԵՆԿՈ

*Փետրվարի 21-ին պրոգրեսիվ մարդկությունը նշեց գաղութային ռեժիմի դեմ մղվող պայքարի Միջազգային օրը։ Գաղութների ժողովուրդների հիշողության մեջ այդ օրը կապված է հետպատերազմյան շրջանում իմպերիալիստական ճնշումից ազատագրվելու համար մղվող պայքարի մի շարք կարևոր իրադարձությունների հետ։ 1946 թվականի փետրվարի 21-ին ապստամբվեցին Բոմբեյում բրիտանական նավատորմի հնդկական նավաստիները՝ հավասարության ու արդարության պահանջներով։ 1947 թվականի փետրվարին Եգիպտոսի աշխատավորներն սկսեցին ընդհանուր գործադուլ, և փետրվարի 21-ը հայտարարվեց պայքարի օր՝ եգիպտական տերիտորիայից անգլիական զորքերը դուրս բերելու համար։ 1948 թվականին դեմոկրատական երիտասարդության Համաշխարհային ֆեդերացիայի նա-*



*խաձեռնությամբ Կալկաթայում գումարվեց*
*Հարավ-Արևելյան Ասիայի երկրների երի-*
*տասարդության կոնֆերենցիա, որտեղ և ո-*
*րոշում ընդունվեց փետրվարի 21-ը գաղու-*
*թային ճնշման դեմ բողոքի ու պայքարի օր*
*հայտարարելու մասին։*

*Գաղութային ռեժիմի դեմ պայքարի Միջազգային օրը, որ այդ ժամանակվանից ի վեր ամեն տարի նշվում է ամբողջ աշխարհի դեմոկրատական հասարակության կողմից, ամենուրեք անցնում է գաղութարարների ատելի լծի դեմ, հանուն ազատության և անկախության գաղութային ժողովուրդների շարժումն ուժեղացնելու նշանաբանով։*

*Գաղութային և կիսագաղութային երկըրներում ավելի քան մեկ միլիարդ մարդ մինչև այժմ էլ հեծում է իմպերիալիստական ստրկության լծի տակ։ Ընկնելով առավելագույն շահույթներ կորզելու հետևից, իմպերիալիստները անողոքաբար կեղեքում և ճիզվիտորեն շահագործում են գաղութային և կախյալ երկրների ժողովուրդներին։ Նրանք ձգտում են այդ երկրները դարձնել իրենց ստրատեգիական էժան հումք և թնդանոթային միս մատակարարողներ, ագրեսիվ պատերազմներ մղելու պլացդարմներ։*

*Հետպատերազմյան ժամանակաշրջանը բնութագրվում է նրանով, որ ուժեղացել է*

ամերիկյան իմպերիալիզմի ներթափանցումը գաղութները, որն այնտեղից դուրս է մղում իր մրցակիցներին՝ Անգլիային, Ֆրանսիային, Հոլլանդիային, Բելգիային։ Դա անխուսափելիորեն հանգեցնում է գաղութներում տնտեսական, քաղաքական և ռազմական տիրապետություն հաստատելու համար իմպերիալիստական տերությունների միջև մղվող պայքարի խիստ սրմանը։ Հանդես գալով «հակագաղութացման» կեղծ լոզունգով, ամերիկյան իմպերիալիստները ստեղծել են գաղութային ճնշման նոր սիստեմը, որը «տրադիցիոն» գաղութային կայսրություններից տարբերվում է իր ավելի դաժանությամբ ու կեղծավորությամբ։

Ամերիկյան ֆինանսա-արդյունաբերական մագնատները հրեշավոր շահույթներ են կորզում, անողոքաբար շահագործելով գաղութային և կիսագաղութային երկրների միլիոնավոր աշխատավորներին։ Ամերիկյան մոնոպոլիստները միայն հետպատերազմյան հինգ տարում գլխավորապես գաղութային և կախյալ երկրներում տեղաբաշխված իրենց արտասահմանյան ներդրումներից ստացել են 7.500 միլիոն դոլար զուտ շահույթ։ Գաղութների շահագործման միջոցով առասպելական շահույթներ են ստանում նաև անգ-



լիական, ֆրանսիական, հոլլանդական, բելգիական և այլ իմպերիալիստները։

Գաղութարարները չեն խորշում ոչ մի միջոցից՝ իրենց շահույթները պահպանելու և բազմապատկելու համար։ Շահագործման ամենաճիզվիտական եղանակներ, սորկացնողների՝ «բաժանիր և իշխիր» փորձված քաղաքականություն, տանկերի և ինքնաթիռների օգնությամբ կատարվող բարբարոսական, արյունառուշտ դատաստաններ՝ այս ամենը գործի է դրվում առավելագույն շահույթներ ապահովելու համար։

Ներկայումս անգլիական ծանր ռմբակոծիչները երկրի երեսից ջնջում են նեգրական գյուղերը Կենիայում, փորձելով ընկճել ժողովրդի ազատության կամքը։ Թունիսում, Մարոկկոյում գաղութարարները գնդակոծում են աշխատավորների ցույցերը, որոնք պահանջում են բավարարել իրենց ազգային իղձերը։

Իմպերիալիստների բազմամյա տիրապետությունը ամենակործանարար ազդեցությունն է ունեցել գաղութների և կիսագաղութների զարգացման վրա։ Օտարերկրյա մոնոպոլիաները կասեցնում են այդ երկրների տնտեսական զարգացումը, վատթարացնում ժողովրդական մասսաների կյանքի ու աշխատանքի պայմանները։ Հայտնի է, որ

գաղութային և կիսագաղութային երկրների բնակչությունը կազմում է ավելի քան մեկ միլիարդ մարդ, այսինքն՝ կապիտալիստական աշխարհի ամբողջ բնակչության 70 տոկոսը։ Սակայն նրանց արդյունաբերական արտադրությունը հավասար է կապիտալիստական երկրների արտադրության միայն հինգ տոկոսին։ Օտարերկրյա մոնոպոլիստների կոնկուրենցիայի կապակցությամբ՝ անկում է ապրում անգամ այն աննշան տեղական արդյունաբերությունը, որ կա գաղութային և կախյալ երկրներում։ Դա իր հերթին ավելի է մեծացնում գործազուրկների բանակը և աղքատացնում աշխատավորներին։

Օգտվելով գործազուրկների հսկայական բանակների առկայությունից, գաղութարարները աշխատավորներին ենթարկում են ամենագազանային շահագործման։ Գաղութների բանվորներն ստիպված են աշխատել օրական 14—16 ժամ, դրա համար միայն կոպեկներ ստանալով։ Տեղական բանվորների աշխատավարձը շատ ավելի ցածր է, քան սպիտակամորթ բանվորներինը։

Գաղութների ժողովուրդներին ամենաբիրտ շահագործման նյութ դարձնելու համար օտարերկրյա ստրկացնողները տեղական



բնակչությանը դուրս են քշել այդ երկրների բնակչության ճնշող մեծամասնության գոյության միակ աղբյուր հանդիսացող հողերից։ Օրինակ, Պուերտո-Ռիկոյում օտարերկրյա, գլխավորապես ամերիկյան, մոնոպոլիաները զավթել են երկրի բոլոր հողերի 80 տոկոսը։ Ռոդեզիայում, որտեղ տերուտնօրեն են հանդիսանում անգլիական գաղութարարները, 145 եվրոպացիներ երկու անգամ շատ հող ունեն, քան երկրի երկու միլիոնանոց հիմնական բնակչությունը։ Եվ այսպես է ամենուրեք, որտեղ տիրապետություն են հաստատել իմպերիալիստները։

Գաղութային երկրներում հողագործությունը գտնվում է նախապատմական մակարդակի վրա։ Չկան ամենատարրական գործիքներ, չխոսելով արդեն տրակտորների, կոմբայնների և ժամանակակից այլ մեքենաների մասին։ Ինչ խոսք կարող է լինել մեքենայի մասին, եթե, ասենք՝ Մադագասկարում յուրաքանչյուր 800 հազար գյուղացիական ընտանիքին ընկնում է ընդամենը մոտ հարյուր գութան։

Զարմանալի չէ, որ այդպիսի պայմաններում գաղութային և կախյալ երկրների բազմամիլիոն աշխատավորների աչքի առջև մշտապես կանգնած է սովամահության ուրվականը։

Գաղութային և կիսագաղութային երկրների աշխատավորների աղետալի դրությունը ավելի են սրում բնակարանային ծանր պայմանները։ Գաղութային և կիսագաղութային երկրների բանվորները և գյուղատնտեսական բնակչությունը, որոնք կազմում են ամբողջ բնակչության 85 տոկոսը, ապրում են մութ ու խոնավ հյուղակներում, առողջության համար վտանգավոր գետնախուցերում։ Գաղութային և կախյալ երկրների շատ քաղաքներում, մասնավորապես, Կասբեայում, Ալժիրում, Մեդինայում, Կասաբլանկայում, Թունիսում, Հաբադանում և այլն, կան ռայոններ, որոնք ամբողջովին կազմված են բենզինի բաքերից և այլ թափոնքներից հապճեպորեն պատրաստված տնակներից և ստացել են «բիդոնվիլա» անունը։

Անգամ Միավորված Ազգերի Կազմակերպության պաշտոնական զեկուցման մեջ, թեպետ և չափավոր բառերով, խոստովանություն կա այն մասին, որ ծանր է գաղութային և կախյալ երկրների աշխատավորների բնակարանային դրությունը։ «Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի քաղաքների մեծ մասում,— ասված է այդ զեկուցման մեջ,— բանվորների տիպիկ ընտանիքը ապրում է մեկ սենյակում, հաճախ առանց



խոհանոցի և սանիտարական հարմարությունների։ Առանձնապես արագ աճած քաղաքները շրջապատված են հետնաբակերից և թափոնքներից կազմված արվարձաններով, բնակիչների, հատկապես վերաբնակիչների կառուցած այնպիսի տնակներով, որոնք զուրկ են ջրմուղի և կոյուղու ամենատարրական սիստեմից»։

Գազանային շահագործումը, անբավարար սնունդը, բնակարանային վատ պայմանները նպաստում են հիվանդությունների լայն տարածմանը տեղական բնակչության մեջ։ Մարոկկոյի բնակչության մեկ երրորդը տառապում է տրախոմայից։ Թունիսում յուրաքանչյուր երրորդ բնակիչը հիվանդ է թոքախտով։ Տանգանիկայում հարյուր հազարից ավելի նեգրեր հիվանդ են բորոտությամբ։ Միլիոնավոր մարդիկ մեռնում են համաճարակներից։

Գաղութարարները ձգտում են գաղութների բնակչությանը պահել խավարի ու տգիտության մեջ։ Գաղութների և կիսագաղութների բնակչության ճնշող մեծամասնությունն անգրագետ է։

Գաղութների և կիսագաղութների բնակչությունը զրկված է տարրական քաղաքական իրավունքներից ու ազատություններից։ Նր-

րան թույլ չի տրվում մասնակցելու իր երկրի գործերի կառավարմանը։ Թեև Ալժիրում ալժիրցիները համարյա 9 անգամ շատ են, քան եվրոպացիները, բայց վերջիններս կազմում են տեղական ժողովրդական ժողովների դեպուտատների ընդհանուր թվի $^{3}/_{5}$-ը։ Տանգանիկայում 11 հազար գաղութարարները իշխանության տեղական օրգանում ավելի շատ ներկայացուցիչներ ունեն, քան 7,5 միլիոն հիմնական բնակիչները՝ նեգրերը։

Գաղութային և կախյալ երկրների ժողովուրդները չեն կարող հաշտվել իրենց աղետալի դրության հետ։ Նրանք վաղուց արդեն համառ պայքար են մղում իրենց ազգային ազատագրության համար, ընդդեմ իմպերիալիստական լծի։ Գաղութների ժողովուրդներն այլև չեն ցանկանում ապրել հին ձևով։ Դեռևս 1927 թվականին Ի. Վ. Ստալինը գրել է, որ գաղութների ու կախյալ երկրների անխռով շահագործման ու ճնշման դարն անցել է, և որ հասել է գաղութներում և կախյալ երկրներում ազատագրական ռևոլյուցիաների դարը, այդ երկրներում պրոլետարիատի արթնացման դարը, ռևոլյուցիայի մեջ նրա հեգեմոնիայի դարը։

Համաշխարհային երկրորդ պատերազմի ժամանակ համաշխարհային իմպերիալիզմի



հարվածային ուժի՝ ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Յապոնիայի ջախջախման հետևանքով կապիտալիստական սիստեմից ազատվեցին Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներ, իսկ գաղութների ժողովուրդների ազգային ազատագրական շարժումը չտեսնված թափ ստացավ։ Հետպատերազմյան ազգային-ազատագրական շարժման ալիքի հուժկու հարվածների տակ ճարճատեցին և սկսեցին փուլ գալ երբեմնի հաստատուն գաղութային կայսրությունները։ Սկսվեց ժողովուրդների ճնշման, կողոպտման և գաղութային շահագործման վրա հիմնված իմպերիալիզմի գաղութային ամբողջ սիստեմի քայքայումը։

Նախկինում գաղութային լծի տակ գտնվող Կորեայի և Հնդկաչինի ժողովուրդները ստեղծեցին իրենց ազատ դեմոկրատական ռեսպուբլիկաները՝ Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան, որը հաջողությամբ հետ մղեց ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ հարձակումը, և Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան, որը հերոսաբար պայքարում է իր ազատության և անկախության համար։

Իր երկրում իմպերիալիստական տիրապետությունը տապալած չին մեծ ժողովրդի

պատմական հաղթանակը կործանիչ հարված հասցրեց գաղութարարների տիրապետությանը Արևելքում և հսկայական չափով նպաստեց ազգային-ազատագրական շարժման ուժեղացմանը բոլոր գաղութային ու կիսագաղութային երկրներում։

Գաղութային ստրկության դեմ պայքարող ժողովրդական մասսաներին գլխավորում է գաղութային և կիսագաղութային երկրների բանվոր դասակարգը։ Մի շարք երկրներում ստեղծվել է, իսկ մյուսներում ստեղծվում է միասնական ազգային ճակատ, որի մեջ բանվոր դասակարգի շուրջն են համախմբվում գյուղացիությունը, արհեստավորները, մանր բուրժուազիան և բնակչության հայրենասիրական մյուս խավերը։

Գաղութարարների դեմ ժողովուրդների պայքարը դրսևորվում է ամենաբազմազան ձևերով։ Հարավային և Հարավ-Արևելյան Ասիայի մի շարք երկրներում այն ընդունել է զինված պայքարի ձև։ Ահա յոթ տարուց ավելի է, որ Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ժողովուրդը զենքով պաշտպանում է իր ազատությունն ու անկախությունը։ Վյետնամի դեմոկրատական կառավարությունը, որին գլխավորում է պրեզիդենտ Խո Շի Մինը, արդեն իր ձեռքում է



պահում երկրի տերիտորիայի $^{9}/_{10}$ մասը, որի բնակչությունը կազմում է մոտ քսան միլիոն մարդ։

Հնդկաչինում մղվող պատերազմը թանկ է նստում ֆրանսիական գաղութարարներին։ Ֆրանսիական զորքերն արդեն կորցրել են 320 հազարից ավելի մարդ՝ սպանված և գերի ընկած։ Ֆրանսիայի դեմոկրատական ուժերը, ինչպես և ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը, պահանջում են շտափույթ կերպով վերջ տալ Վյետնամում մղվող պատերազմին։ Ժողովուրդները պահանջում են լիկվիդացնել պատերազմի հնդկաչինական օջախը Ասիայում, ինչպես պահանջեցին վերջ տալ պատերազմին Կորեայում։

Զենքը ձեռքին իրենց ազատության համար պայքարում են Մալայայի և Ֆիլիպինների ժողովուրդները։ Գաղութարարները, չնայած իրենց գերակշիռ ուժերին, նորագույն սպառազինությանը, ինքնաթիռներին, տանկերին, թնդանոթներին, չեն կարող ընկճել այդ երկրների ազգային-ազատագրական բանակների դիմադրությունը։

Մերձավոր ու Միջին Արևելքի մի շարք երկրներում և Լատինական Ամերիկայում ուժեղանում է հակաիմպերիալիստական շարժումը, մասնավորապես, պայքարը օ-

տարերկրյա մոնոպոլիստների ձեռքում գտնվող արդյունաբերության ազգայնացման համար, պայքարն այդ երկրների տերիտորիաներում օտարերկրյա զորքեր պահելու դեմ, պայքարը ռազմական պակտերի և այն տնտեսական համաձայնագրերի դեմ, որոնք ուղղված են ԱՄՆ-ի տիրապետությունն ուժեղացնելու նպատակին: Այսպես, օրինակ, մերձավոր-արևելյան երկրների ժողովուրդները վիժեցնում են միջին-արևելյան պակտ ստեղծելու իմպերիալիստական պլանները, բողոքում են այդ երկրների ներքին գործերին ԱՄՆ-ի միջամտության դեմ:

Մասսայական գործողությունների ընթացքում, որոնց նախաձեռնողն է հանդիսանում բանվոր դասակարգը, առանձնապես լայն թափ ստացավ գործադուլային շարժումը: Օրինակ՝ Ինդոնեզիայում 1951 թվականին տեղի ունեցավ 541 գործադուլ, որոնց մասնակցեց 319.030 բանվոր: Անցյալ տարի գործադուլ են արել գյուղատնտեսության 800.000 աշխատավորներ: 1953 թվականի սկզբներին Ցեյլոնի թեյի և կաուչուկի պլանտացիաների 500.000 բանվորներ ցույց կազմակերպեցին աշխատավարձի իջեցման դեմ: Աֆրիկայի ֆրանսիական



գաղութներում բազմաթիվ անգամ տեղի են ունեցել ընդհանուր գործադուլներ: Գաղութային և կիսագաղութային երկրների աշխատավորների մասսայական ելույթների ժամանակ ամրապնդվում է նրանց միասնությունը, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, ամրապնդվում են գաղութների և մայր ցամաքի երկրների աշխատավորների եղբայրական կապերը:

Ազգային-ազատագրական շարժումը գաղութներում գնալով ավելի լայն թափ է ընտանում: Իմպերիալիստների ոչ մի ռեպրեսիա և խորամանկություն չի կարող կանգնեցնել այդ շարժումը, որովհետև անհնարին է շուռ տալ պատմության անիվը: Գաղութարարներն անզոր են խորտակել ժողովուրդների խաղաղության, ազատության և ազգային անկախության ձգտումը:

Գաղութային ռեժիմի դեմ պայքարի Միջազգային օրը, որ նշվում է փետրվարի 21-ին, է՛լ ավելի կուժեղացնի հակաիմպերիալիստական շարժումը գաղութային և կիսագաղութային երկրներում:

# ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎՆ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՐԵՐԻՆ

Ն. ՂԱԶԱՐՅԱՆ

*Ընտրությունների այս օրերին ագիտացիոն աշխատանքի ընդօրինակելի փորձ ունի Երևանի Միկոյանի ռայոնի Քանաքեռգէսի պարտիական կազմակերպությանը կից ագիտկոլեկտիվը, որը միավորում է 41 ագիտատորի։*

*Ագիտատորները մասսայական-բացատրական լայն աշխատանք են ծավալել ընտրողների մեջ՝ թե՛ ըստ աշխատանքի վայրի և թե՛ ըստ բնակավայրի։*

*Ագիտկոլեկտիվն օգնում է ագիտատորներին, որպեսզի նրանք նպատակասլաց, բովանդակալից և հետաքրքիր ագիտացիոն զրույցներ ունենան ընտրողների հետ։ Ընտրական կամպանիայի հենց առաջին օրվանից ագիտկոլեկտիվը մշակեց ագիտացիոն աշխատանքի պլան, որտեղ ամենայն մանրամասնությամբ նախատեսված է, թե որ օրը քաղաքական-բացատրական ինչ աշխատանք*



*է կատարվելու ընտրողների հետ։ Ագիտացիոն աշխատանքի այդ պլանին համապատասխան՝ ագիտատորներն ընտրողների համար շաբաթական 2—3 անգամ զրույց են կազմակերպում ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության և ՍՍՌՄ Կոնստիտուցիայի վերաբերյալ։ Ընտրողների համար առանձին զրույցներ են կազմակերպվել նաև ՍՄԿՊ 19-րդ համագումարի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիայի, ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումների և ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարելավման վերաբերյալ պարտիայի ու կառավարության կողմից վերջերս ընդունված մյուս որոշումների մասին։*

*Որպեսզի ընտրողների համար կազմակերպվող ագիտացիոն զրույցները լինեն ավելի արդյունավետ, կոնկրետ և մարտական, ագիտկոլեկտիվում պարբերաբար քննության են առնվում առանձին զրույցներ, ուր նշվում են դրանց դրական ու թերի կողմերը և այդ միջոցով օգնում ագիտատորներին, որպեսզի վերջիններս հաջող կերպով նախապատրաստվեն զրույցի։ Այսպես, օրինակ, վերջերս ագիտկոլեկտիվում քննության առնվեց ագիտատորներից մեկի զրույցը*

«ՍՍՌՄ Կոնստիտուցիան ամենադեմոկրատականն է աշխարհում» թեմայով: Զրույցի դրական կողմերը նշելուց հետո, ագիտատորները նպատակահարմար գտան զրույցը լրացնել նրանով, թե ինչպես մեզ մոտ արված է ամեն բան, որպեսզի լիակատար կերպով ապահովվի քաղաքացիների իրավունքների կենսագործումը, որ ՍՍՌՄ Կոնստիտուցիան չի սահմանափակվում քաղաքացիների ձևական իրավունքների ֆիքսացիայով, ինչպես այդ արվում է կապիտալիստական երկրներում, այլ ապահովում է այդ իրավունքներն իրականացնելու միջոցները:

Այնուհետև ագիտատորները պահանջեցին, որ զրույցի ընթացքում հանգամանորեն պարզաբանվի այն հարցը, թե ինչպես ԱՄՆ-ում, Անգլիայում և կապիտալիստական մյուս երկրներում շահագործող դասակարգերը բազմաթիվ ընտրական ցենզերով ոտնահարում են քաղաքացիների իրավունքները, ոչնչացնում դեմոկրատական ազատության վերջին մնացորդները:

Բացի այդ, նույն ագիտկոլեկտիվում քննարկված զրույցների կապակցությամբ հանգամանորեն պարզաբանվեց այն հարցը, թե ինչ աղբյուրներից կարելի է օգտվել՝ ագիտացիոն զրույց պատրաստելիս և ագիտա-



տորներին տրվեց համապատասխան գրականության ցուցակ:
Ընտրություններին հաջող նախապատրաստվելու համար խելացի և մտածված աշխատանք է կատարվում նաև ագիտպունկտում, ուր ագիտատորներն ամեն օր ընտրողների հետ ագիտացիոն զրույցներ են ունենում քաղաքական և գիտական թեմաների շուրջը: Ընտրողներն ագիտպունկտում ցանկացած ժամանակ կարդում են թարմ թերթեր, ամսագրեր, օգտվում ընտրություններին վերաբերող գրականությունից և այլն:
Ագիտպունկտի սեղանների վրա դասավորված են օրվա թերթեր, միութենական և ռեսպուբլիկական ամսագրեր: Ագիտպունկտըն ունի ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիաները, ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրությունը, ընկեր
Ի. Վ. Ստալինի զեկուցումը՝ ՍՍՌՄ Կոնստի-
տուցիայի նախագծի մասին, նրա 1937 և
1946 թ. թ. ճառերը Մոսկվա քաղաքի
Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողնե-
րի նախընտրական ժողովում, ընկեր Գ. Մ.
Մալենկովի զեկուցումը ՍՄԿՊ 19-րդ համա-
գումարում և ճառը՝ ՍՍՌՄ Գերագույն Սո-
վետի հինգերորդ սեսիայում, ինչպես նաև
բազմաթիվ քաղաքական և գեղարվեստական

գրքեր։ Ագիտպունկտում սահմանված է
ամենօրյա հերթափոխություն։ Այնպես, որ
ագիտատորները օրվա բոլոր ժամերին հան-
դիպում են ընտրողների հետ և պատասխա-
նում նրանց հուզող հարցերին։
Խրախուսանքի արժանի է նաև այն, որ
ագիտկոլեկտիվը հատուկ ուշադրություն է
դարձնում առաջին անգամ ընտրություննե-
րին մասնակցող ընտրողների վրա։ Նրանց
համար ագիտկոլեկտիվն արդեն կազմակեր-
պել է զրույց «Ընտրական սիստեմը մեզ
մոտ և կապիտալիստական երկրներում»,
«ՍՍՌՄ քաղաքացիների իրավունքներն ու
պարտականությունները» և շատ ուրիշ թե-
մաների վերաբերյալ։
Ագիտկոլեկտիվի աշխատանքներում խո-
շոր տեղ է գրավում նաև ցուցադրական
ագիտացիան։ Հիդրոկայանի ցեխերում, ա-
գիտպունկտում, բանվորական ակումբում,
վարչության շենքի մուտքի մոտ և մյուս աչ-
քի ընկնող տեղերում փակցված են բազմա-
թիվ լոզունգներ, ՍՄԿԿ 19-րդ համագումա-
րում ընկ. Գ. Մ. Մալենկովի զեկուցումից
ցիտատներ և սոցիալիստական մրցությամբ
ստանձնած պարտավորությունները կատա-
րելու վերաբերյալ բազմաթիվ ցուցադրական
նյութեր։ Օրինակ, մեքենայական ցեխում



փակցված են՝ «Ռեսպուբլիկայի արդյունա-
բերությանը անխափան ապահովենք էլեկ-
տրաէներգիայով», «Աշխատել առանց վթա-
րի» լոզունգները։ Էլեկտրացեխում աչքի
ընկնող տեղում փակցված է «Հիշի՛ր և կա-
տարի՛ր սոցմրցմամբ ստանձնած պարտավո-
րությունները»։ Վարչության շենքում, պատ-
վանդանի վրա ամրացված է «Նորարարա-
կան առաջարկների տախտակը», որտեղ
դիագրամաներով պատկերված են 1950—54
թվականների ընթացքում հիդրոկայանում
կատարված նորարարական առաջարկու-
թյունները և դրանց շնորհիվ ստացված
խնայողությունը։ Այնուհետև գեղեցիկ շըր-
ջանակների մեջ տեղավորված են նորարար-
ների ֆոտոնկարները, որոնք ընտրություննե-
րի այս օրերին աշխատում են կրկնապատկ-
ված եռանդով։ Առաջավոր այդ աշխատող-
ները միաժամանակ ագիտատորներ են։
Ագիտպունկտում գեղարվեստորեն ձևա-
վորված են ֆոտոնկարներ և դիագրամներ,
որոնք ցույց են տալիս սովետական ժողո-
վրդի ձեռք բերած հաջողությունները հետ-
պատերազմյան ժամանակաշրջանում։ Քա-
նաքեռզէսի աչքի ընկնող տեղերում կան
բազմաթիվ լոզունգներ, պլակատներ, որոնք
կոչ են անում ընտրողներին՝ արտադրական

նոր հաջողություններով նշանավորել ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները և մարտի 14-ին միահամուռ կերպով ձայն տալ կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին։

Այժմ ագիտկոլեկտիվը խելացի ու մտածված աշխատանք է կատարում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Դիմումը բոլոր ընտրողներին հանգամանորեն պարզաբանելու գործում։ Ագիտկոլեկտիվի խորհրդակցությունում լսվեց հատուկ հրահանգչական զեկուցում ընտրողներին ուղղված դիմումը մասսայականացնելու վերաբերյալ։ Ագիտատորներն ընտրողների համար արդեն զրույցներ են կազմակերպել արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի և գիտության զարգացման բնագավառում սովետական ժողովրդի ձեռք բերած վիթխարի հաջողությունների մասին, այն մասին, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները մեր երկիրը դիմավորում է իր ուժերի ծաղկման շրջանում, էկոնոմիկայի և կուլտուրայի հզոր վերելքի պայմաններում։ Ագիտատորներին մանրամասնորեն հրահանգավորված է, որպեսզի նրանք ընտրողներին պարզաբանեն, որ Կոմունիստական պարտիայի նպատակը



սովետական ժողովրդի բարեկեցության հետագա անշեղ բարձրացումն է, նրա նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների լրիվ բավարարումը։ Այդ նպատակի անշեղ իրականացումը պարտիայի և կառավարության ամբողջ գործունեության բարձրագույն օրենքն է, կոմունիստական շինարարության ծրագրի կարևորագույն բաղկացուցիչ մասը։

Չնայած այս բոլոր հաջողություններին, ագիտկոլեկտիվն իր աշխատանքում ունի նաև լուրջ թերություններ։ Ամենից առաջ բոլոր ագիտատորները չէ, որ սերտորեն կապված են ունկնդիրների-ընտրողների հետ, նրանցից ոմանք դեռ քիչ են լինում ընտրողների մոտ, խորը և բազմակողմանիորեն ու հետաքրքիր կերպով չեն կարողանում նյութը մատուցել ունկնդիրներին։ Այդ է պատճառը, որ ագիտացիոն շատ զրույցներ անցնում են անհետաքրքիր ու անարդյունավետ։ Ագիտատորներից ոմանք պարտկազմակերպությանը տեղյակ չեն պահում ընտրողների քննադատական դիտողությունների մասին և նրան ժամանակին չեն օգնում թերությունները լիկվիդացնելու համար։

Հարկավոր է հիշել, որ ագիտկոլեկտիվը կոչված է ամեն օր քաղաքական աշխատանք կատարելու աշխատավորների մեջ, պատասխանելու նրանց հուզող հարցերին, մոբիլիզացնելու նրանց՝ կատարելու պարտիայի և կառավարության որոշումները։

Ուստի անհրաժեշտ է այս օրերին է՛լ ավելի ուժեղացնել ագիտկոլեկտիվի աշխատանքը և ագիտատորներին ցույց տրվող օգնությունը դարձնել ավելի նպատակասլաց ու արդյունավետ։



ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ԱՆՄԽԻԹԱՐ ՎԻՃԱԿԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Կապիտալիստական երկրների կառավարողները, որոնք հլու-հնազանդ կերպով կատարում են շահագործող դասակարգերի կամքը, ամենևին շահագրգռված չեն ժողովրդական կրթության գործով, որովհետև ռեակցիոն այդ կառավարողների համար խորթ են աշխատավորական լայն մասսաների կենսական շահերը։

Հետևյալ թվերն ու փաստերը ցույց են տալիս ժողովրդական կրթության անմխիթար վիճակը կապիտալիստական երկրներում։

★ Ամերիկայի Միացյալ Նահանգներում ռազմական ծախսերը կազմում են պետական բյուջեի 74 տոկոսը, իսկ կրթության նպատակների համար նախատեսված գումարը պետական բյուջեի մեկերորդ տոկոսից էլ պակաս է։ Այդ է պատճառը, որ Ամերիկայում դպրոցական նոր շենքեր չեն կառուցվում, գործող դպրոցները զուրկ են տարրական հարմարություններից և հաճախ տեղավորվում են ձեղնահար-

կերում, հավանոցներում։ Չկան բավարար թվով ուսուցիչներ, միլիոնավոր երեխաներ զրկված են սովորելու հնարավորությունից։

★ Լուսավորության հարցերի վարչության տվյալներով՝ ԱՄՆ-ի բարձրագույն ուսումնական հաստատությունների շրջանավարտների թիվը 1952—53 ուսումնական տարում նախորդ տարվա համեմատությամբ կրճատվել է 30 հազարով։

ԱՄՆ-ում ավելի քան 2 միլիոն դպրոցական տարիքի որբ երեխաներ, չունենալով ապրելու մշտական տեղ, թափառական կյանք են վարում և գիշերում են փողոցներում։ Տասնյակ միլիոնավոր երեխաներ գտնվում են նյութական ծանր պայմաններում, սիստեմատիկորեն թերսնվելու հետևանքով վերջին տարիներում զգալի չափով ավելացել է երեխաների մահացության տոկոսը։

Ամերիկայում,— գրում է ամերիկյան պրոֆմիութենական «Սիտի-նյուս» թերթը,—շատ ապրանքներ պատրաստվում են մինչև 9 տարեկան սոված, հյուծված փոքրիկների ձեռքերով։ Պաշտոնական տվյալներով ԱՄՆ-ի գործարաններում, ֆաբրիկաներում, հանքերում, պլանտացիաներում շահագործվում են ավելի քան 3 միլիոն դպրոցական տարիքի երեխաներ, որոնք աշխատում են վաղ առավոտից մինչև ուշ երեկո։

★ Լատինական Ամերիկայի 20 երկրներից 11-ում բնակչության կեսից ավելին անգրագետ է։ Բոլիվիայի



բնակչության 80 տոկոսը, Հայիթիի՝ 90 տոկոսը լրիվ անգրագետ է։

★ Անգլիական «Պիկչեր պոստ» ամսագիրը 1953 թվականի մարտի 14-ի հրապարակված մի հոդվածում նշում է այն լուրջ տագնապը, որն առաջացել է Անգլիայում անգրագիտության աճի կապակցությամբ։ Ամսագիրը նշում է. «Այժմ դրությունն ավելի վատ է, քան 1940 թվականին էր։ Լրիվ անգրագետների թիվը կազմում է ավելի քան 2—3 հարյուր հազար, իսկ կիսագրագետներինը՝ ավելի քան 3 միլիոն մարդ»։

★ Քայքայման վիճակում են գտնվում անգլիական դպրոցական շատ շենքեր։ Բուրժուական «Դեյլի Միրրոր» թերթը նկարագրում է Մանչեստրի և Բիրմինհայմի դպրոցների և դպրոցականների անտանելի վիճակը։ Երեխաները պարապում են միջանցքներում, հանդերձարաններում, մինչև անգամ այն շենքերում, որոնք ենթակա են փլման և հատկապես արգելված են օգտագործելու։ Ավելի քան 600 դպրոցական շենք ճանաչվել են անպետք, սակայն նրանցում շարունակում են պարապմունքներ անցկացնել։

★ Անգլիայում տարեցտարի կրճատվում են սովորողների վրա կատարվող փաստացի ծախսերը։ Հետպատերազմյան տարիներին տարրական դպրոցի յուրաքանչյուր սովորողին ընկնող ծախսերը կրճատվել են 28 տոկոսով, իսկ միջնակարգ դպրոցներինը՝ 12,5 տոկոսով։ Կրթության գործի դրվածքն ավելի վատ է Ֆրանսիայում, Իտալիայում, Իսպանիայում և այլն։

★ Ֆրանկոյական Իսպանիայում երիտասարդության
50 տոկոսը անգրագետ է։ Պատանիների և աղջիկների
60 տոկոսից ավելին տառապում են թոքախտով։ Ի-
սպանիայում 4 տարվա (1946—1950 թ. թ.) ընթաց-
քում սովորողների թիվը կրճատվել է 25 տոկոսով։ Ա-
մեն տարի բազմաթիվ դպրոցներ փակվում են և մի-
լիոնավոր երեխաներ մնում անգրագետ։

★ Ֆրանսիայում շատ ծանր վիճակ է ստեղծվել
դպրոցականների համար։ Որպեսզի երեխաները նոր-
մալ պայմաններում սովորեն, պահանջվում է կառու-
ցել 48 հազար դպրոցական նոր շենք։ Ամերիկյան թե-
լադրանքով երկրում տարեցտարի ավելանում են ռազ-
մական նպատակներին կատարվող հատկացումները և
իջեցվում կրթության համար նախատեսվող ծախսերը։
Հսկայական միջոցներ են ծախսվում Հնդկաչինում
տեղի ունեցող անարդարացի-զավթողական պատերազ-
մի վրա։ Այդ պատերազմում կատարվող երկու շաբաթ-
վա ծախսերը լրիվ կբավարարեն, որպեսզի ֆրանսիա-
կան դպրոցականների համար ստեղծվեն սովորելու
անհրաժեշտ պայմաններ։

★ Դժվար և ծանր է Իտալիայի հասարակ մարդ-
կանց երեխաների համար կրթություն ստանալը։ Շատ
բարձր են դասագրքերի գները։ Միայն 5-րդ դասարա-
նի դասագրքերի արժեքը կազմում է 1.500 լիր, տետ-
րերի արժեքը՝ 300 լիր։ Որպեսզի հնարավոր լինի լը-
՝րիվ բավարարել մեկ երեխային դպրոցական պիտույք-
ներով, պահանջվում է 6 հազար լիր։ Իտալական բան-



վորը պետք է մեկ շաբաթ լրիվ աշխատի, որպեսզի
վաստակի այդքան գումար։ Զարմանալի չէ, որ Իտա-
լիայում մեկից երկու ու կես միլիոն պատանիներ
անգրագետ են, որովհետև ոչ բոլոր ընտանիքներն ու-
նեն իրենց երեխաներին ուսման տալու։

★ Թյուրքական կառավարությունը Վաշինգտոնի իր
տիրոջ ցուցումով պետական բյուջեի 75 տոկոսը տրա-
մադրել է ռազմական պատրաստությանը, իսկ ժողո-
վրդական կրթությանը հատկացրել է միայն 2 տոկո-
սը։ Թյուրքիայի ընդհանուր ազգաբնակչության 80
տոկոսը, գյուղական վայրերում 90 տոկոսը, անգրա-
գետ է։ Թյուրքիայի կուլտուրայի կենտրոն Ստամբու-
լում ազգաբնակչության 55 տոկոսը անգրագետ է, 3,5
միլիոն դպրոցական տարիք ունեցող երեխաներից մեկ
միլիոն երկու հարյուր հազար երեխաներ դպրոցներից
դուրս են մնացել։ 40 հազար գյուղերից 28 հազարում
չկան նույնիսկ տարրական դպրոցներ։ Թյուրքական
գյուղական դպրոցները մեծ մասամբ տեղավորված են
գոմերում։ Թյուրքական «Ենի սաբախ» թերթի հայ-
տարարությամբ դպրոցներում ուսուցիչները չեն կարո-
ղանում աշակերտներին սովորեցնել ինչպես հարկն է,
իսկ աշակերտները չեն կարողանում ձեռք բերել ան-
հրաժեշտ գրքույկներ։ Դպրոցներում չկան կաբինետ-
ներ, լաբորատոր սարքավորում, սեղաններ, նստա-
րաններ, դպրոցների 90 տոկոսը ձմեռը չեն տաքաց-
վում։

★ Բրազիլիայում բնակչության 70 տոկոսը նստե-

մատիկ կրթություն չի ստանում։ Միջնակարգ դպրոցների մեծ մասը պատկանում է մասնավոր անձանց, որտեղ ուսման վարձը շատ բարձր է և այդ դպրոցներում հնարավորություն չունեն սովորելու աշխատավորների երեխաները։ Զարմանալի չէ, որ Բրազիլիայում 6 միլիոն (10—14 տարեկան) պատանիներից միջնակարգ դպրոցներում սովորում են միայն 300 հազար հոգի (5 տոկոսը)։

★ Ֆինլանդիայում եղած դպրոցների մեկ-երրորդն է միայն պետական, իսկ մնացած երկու երրորդը պատկանում են ընկերություններին և մասնավոր անձանց։ Պետական դպրոցներում տարեկան ուսման վարձը 3 հազար մարկա է, իսկ մասնավոր դպրոցներում այն հասնում է 11—18 հազար մարկայի։ Դպրոցներում սովորում են գլխավորապես կալվածատերերի, կուլակների և ունևոր գյուղացիների երեխաները։ Բանվորների, չքավոր գյուղացիների երեխաները հնարավորություն չունեն սովորելու։

★ Ֆինլանդիայի բուհերում սովորող ուսանողները կես տարվա համար հանրակացարանի վարձ են մուծում 2.500 մարկա, առողջապահության համար՝ 200 մարկա։ Բացի այդ ուսանողը յուրաքանչյուր քննական առարկայի համար վճարում է 200-ական մարկա։ Իսկ մասնավոր բուհերում, ինչպես օրինակ ֆինտնտեսագիտական ինստիտուտում, բացի այդ բոլոր ծախսերից ուսանողը նաև 12 հազար մարկա ուսման վարձ է վճարում։ Ուսանողների 80 տոկոսը պատկանում են ունևոր դասին։



★ Եթովպիայում բնակչության 90 տոկոսը անգրագետ է։ Պետական և եկեղեցական տարրական դպրոցներում սովորում են 170 հազար հոգի, որը կազմում է երկրում դպրոցական հասակ ունեցող երեխաների 7 տոկոսը։

★ Իրաքում բնակչության գրագիտությունը հազիվ հասնում է 10 տոկոսի։ Գյուղական բնակչության ավելի քան 98 տոկոսն անգրագետ է։ 750 հազար դպրոցական հասակ ունեցող երեխաներից սովորում են միայն 175 հազար հոգի։ Իրաքի ոչ մի գյուղում չկա ո՛չ կինո, ո՛չ էլ ռադիո։

★ Բրիտանական Սոմալիում գրել և կարդալ իմացողների թիվը կազմում է բնակչության մեկ տոկոսը, Նյասալենդում՝ 13 տոկոսը, Ոսկե Ափում՝ 20 տոկոսը։ Կենիայում եվրոպացիների երեխաների կրթության համար 145 անգամ շատ միջոցներ են ծախսվում, քան տեղացիների (բնիկների) երեխաների համար։

★ Ֆրանսիական Արևմտյան Աֆրիկայի և Ֆրանսիական հասարակածային Աֆրիկայի բնակչության ավելի քան 95 տոկոսը անգրագետ է։ Դպրոցական տարիք ունեցող երեխաների միայն 4 տոկոսն է սովորում դպրոցներում։

★ Ալժիրում դպրոցական տարիք ունեցող մուսուլման երեխաների թիվը կազմում է մեկ միլիոն 526 հազար, սակայն դպրոցներում սովորողների թիվը հասնում է մոտ 170 հազար հոգու։

---

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ԲՈՂՈՔՈՒՄ ԵՆ ԱՄԵՐԻԿՅԱՆ ԹԵԼԱԴՐԱՆՔԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԴԵՄ

Թելադրանքի և ուրիշ պետությունների ներքին գործերին միջամտելու քաղաքականությունը, որ վարում են Միացյալ Նահանգների ռեակցիոն կառավարողները, ժողովուրդների մեջ վճռական բողոք է առաջ բերում։ Եվրոպայի, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդները պայքարում են ամերիկյան իմպերիալիզմի կողմից իրենց երկրների ստրկացման դեմ։ Նրանք խաղաղություն են ցանկանում, պահանջում են դադարեցնել սպառազինության մրցավազքը, հանդես են գալիս Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ բարեկամական հարաբերություններ հաստատելու օգտին։ Ժողովուրդները իրենց կառավարություններից պահանջում են վարել խաղաղության և ազգային սուվերենության քաղաքականություն։

Հակաամերիկյան տրամադրությունն ուժեղանում է ամսե-ամիս։ Այդ ստիպված են խոստովանել անգամ իրենք ամերիկացիները։ ԱՄՆ-ի քաղաքական գործիչները և մամուլը անհանգստությամբ նշում են այն



փաստը, որ Միացյալ Նահանգների հեղինակությունը ընկել է։ Համարյա յուրաքանչյուր երկրում, որտեղ երևում են ամերիկյան իմպերիալիզմի ներկայացուցիչները, նրանց դիմավորում են մի միահամուռ պահանջով՝ «Ամերիկացիներ, կորե՛ք տուն»։

★ Ամերիկյան «Լայֆ» ամսագիրը «Վտանգավոր շռայլությունը եվրոպացիների համար՝ ատելություն է դեպի Ամերիկան» հոդվածում գրում է. «Եվրոպայում և հատկապես Անգլիայում թաքնված, բայց ամերիկյան քաղաքականության նկատմամբ խոր վրդովմունքն այնքան հեռու է գնացել և վերջին ժամանակներս այնքան արագ է ուժեղանում, որ քաղաքական գործիչները համարյա չեն համարձակվում այդ մասին բացահայտորեն ասել և փորձում են այդ քողարկել ճառերով»։

«Արևմտյան Եվրոպայի ութ գլխավոր երկրներում կատարած ավտոմոբիլային ուղևորության ժամանակ,— գրում է այդ հոդվածի հեղինակը,— ես միշտ լսում էի միևնույն վհատ երգը. ամերիկացիները անդաստիարակ և կոպիտ երեխաներ են։ Նրանց քաղաքականությունը վաճառվածության զուգակցումն է հարստության, կոկա-կոլայի և սենատոր Մակկարտի հետ. նրանց կառավարությունը, ինչպես երևում է, աշխարհը պատերազմի է տանում»։

★ «Նյու-Յորք Թայմս» թերթը գրում է. «Հակաամերիկյան տրամադրություններն ապշեցնում են Եվրոպայում ամերիկյան դիտորդներին։ Հիմարություն կլինի ուշադրություն չդարձնել այն բանին, որ հակա-

ամերիկյան տրամադրություններ գոյություն ունեն, որ վերջին տարիներում դրանք ուժեղացել ու տարածվել են և որ նրանք արևմտյան աշխարհի համար իրենցից վտանգ են ներկայացնում... Այդ շփումը կարող է կատաստրոֆիկ չափեր ընդունել»։

★ ԱՄՆ-ի պետական քարտուղարի օգնական Կեբոտը իր հայտարարությունում անհանգստություն հայտնեց Լատինական Ամերիկայում հակաամերիկյան տրամադրությունների ուժեղացման կապակցությամբ։ Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո, հայտարարեց Կեբոտը. «Մեր կոնտինենտալ համերաշխությունում ճեղքվածք երևաց և այժմ նա այնպես կայուն և անվիճելի չէ, ինչպես 8 տարի առաջ էր»։

★ «Նյու-Յորք ուորլդ տելեգրամ էնդ Սան» թերթի թղթակից Ուլյամ Սիմմսը հրատարակեց «Ատելությունը Միացյալ Նահանգների նկատմամբ— գլխավոր սպառնալիքն է» վերնագրով հոդվածը։ Նա գրում է. «Եվրոպայում մենք տանուլ ենք տալիս։ Որքան էլ հենց սկզբից լավ լիներ Արևմտյան Եվրոպայում Միացյալ Նահանգների քաղաքականությունը, ապա այժմ այն դադարում է իրեն արդարացնելը»։

★ Ամերիկյան կոնգրեսմեն Պոուլսոն վերադառնալով Եվրոպայից նշել է. «Երկրների մեծամասնությունը... մեզ նայում է, որպես օկուպացիոն բանակի»։

★ Դանիական «Յուլլանդս-Պոստեն» թերթը գրում է. «ԱՄՆ-ի և Եվրոպայի հարաբերություններում, եթե ոչ ատելություն, ապա խոշոր դժգոհություն կա»։

Հանդես գալով ընդդեմ ԱՄՆ-ի տնտեսական և ռազ-



մական ճնշման, դանիական միլիոնատեր Մելլերը հայտարարել է. «...Ձեր քաղաքականությունը մաքսի և առևտրի ասպարեզում կրում է ծայրահեղ հովանավորող բնույթ։ Ձեր քաղաքականությունը նավարկության ասպարեզում՝ նույնն է։ Այն նույնիսկ ագրեսիվ է... Դա յուրատեսակ սառը պատերազմ է և վատ օրինակ մնացած աշխարհի համար»։ Շոշափելով Դանիայում ամերիկյան զորքի տեղավորման հարցը, Մելլերը գրում է. «Ես, որպես դանիացի այդ բանին կհամաձայնվեմ միայն այն դեպքում, եթե մեր հայրենիքի համար իրականում այդ անհրաժեշտ լիներ...»։

★ Լոնդոնի մոտ, Ռուխլինում է գտնվում ամերիկյան 3-րդ օդային բանակը և ռազմական մեծ քաղաքը։ Վերջերս տեղական բնակիչները հանեցին ամերիկյան դրոշակը և կախեցին անգլիականը, իսկ շտաբի շենքի վրա ամրացրին օդային վիշապ հետևյալ մակագրությամբ. «Յանկիներ, կորե՛ք տուն»։ Այդ նույն օրը միտինգ տեղի ունեցավ, որին մասնակցեցին երկու հազար մարդ։ Միտինգում բանաձև ընդունվեց, որով պահանջում էին լիկվիդացնել ռազմական բազաները։

★ Իտալիայի բնակչությունը վրդոված է ամերիկյան զինծառայողների վարմունքից։ Մի շարք քաղաքներում բողոքի միտինգներ և ցույցեր տեղի ունեցան։ Նեապոլի բնակիչները բողոքի ցույց կազմակերպեցին ամերիկյան ծովայինների և զինվորների կամայականությունների դեմ, որոնք տեռորի են ենթար-

կում քաղաքի բնակչությանը։ Տորոնտոյի բնակիչները պահանջում են կարգի հրավիրել ամերիկյան զինծառայողներին և վերջ տալ նրանց անկարգություններին։

★ Իտալական բուրժուական «Մոմենտո» թերթը հրատարակեց «Անհասկացողություն» վերնագրով մի հոդված, որի մեջ քննադատում է Իտալիայի նկատմամբ ԱՄՆ-ի քաղաքականությունը։ «Ամերիկյան դիտորդները,— գրում է թերթը,— մեծ դառնությամբ նշում են, որ չի կարելի թաքցնել այն փաստը, որ Իտալիայում զգալիորեն նվազել է ԱՄՆ-ի նկատմամբ համակրանքը, բայց արդյոք այդ դիտորդները փորձեցին հասկանալ այդ երևույթը»։ Այնուհետև թերթը քննադատության է ենթարկում ամերիկյան «օգնության» սիստեմը, ընդգծելով, որ Իտալիան կարիք ունի արտասահմանում արտաքին առևտրի ծավալման։

★ Եվրոպական պետությունների ներքին գործերին ամերիկյան միջամտությունը բացահայտ դժգոհություն է առաջ բերում անգամ բուրժուական աջ մամուլի կողմից։ Այսպես, ֆինանսական շրջանների օրգան «էնֆորմասիոն» (Ֆրանսիա) թերթը գրում է. «Մենք արդեն բազմիցս ստիպված ենք խորհուրդ տալ մի շարք ամերիկյան իշխանությունների խնայել եվրոպական ժողովուրդների և մասնավորապես, ֆրանսիական ժողովուրդների զգացմունքները, խուսափելով ներքին քաղաքականության ասպարեզում նրանց այնպիսի դիրեկտիվներ «հանձնարարելուց», որոնք նման են սպառնալիքի կամ ճնշման։ Կարելի էր տեսնել, թե



ինչպես ամերիկյան դեսպանները բացահայտորեն միջամտում էին Ֆրանսիայի կառավարական ճգնաժամերին։

★ Բրազիլիայում բողոքի հզոր ալիք բարձրացավ ամերիկյան էսկադրան Բրազիլիայի նավահանգիստները ժամանելու դեմ։ Ռիո-դե-Ժանեյրոյում տեղի ունեցավ մասսայական ցույց։ Բանվորները, ուսանողները, ծառայողներն անցնում էին կենտրոնական փողոցներով հետևյալ լոզունգներով. «Բրազիլիայից դո՛րս դոլարյան էսկադրա», «Կորչի՛ զավթիչների էսկադրան»։ Ցույցը վերջացավ բազմամարդ միտինգով։ Սան-Պաուլո քաղաքում հատուկ հանձնաժողով կազմվեց ամերիկյան էսկադրաների «այցի» դեմ պայքարելու համար։ Սանտոս նավահանգստի դոկերները հայտարարեցին. «Թող ամերիկացիները մնան իրենց տները»։ Բրազիլիայի կանանց ֆեդերացիան հատուկ դիմում հրապարակեց, որով կանանց կոչ էր անում «Բողոքել ամերիկյան ռազմական նավերի ժամանման դեմ, որը «լուրջ մարտահրավեր է մեր հայրենիքի համար»։

★ Կանագավայի (Յապոնիա) ռազմական բազայի բանվորները թերթիկներ են հրատարակել, որոնց մեջ նրանք իրենց զայրույթն են արտահայտել Ամերիկայի նկատմամբ։ Թերթիկներից մեկում ասվում է. «Յանկիներ, անհապաղ կորե՛ք տուն», անհապաղ վերադարձրեք նավահանգիստները, գործարաններն ու ֆաբրիկաները մեզ, յապոնացիներիս»։

# «ՊԱՏՄՎԱԾՔ ԿԱՆԱՉ ՔԱՌԱԿՈՒՍԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ»

*Մոսկվայի գիտա-պոպուլյար ֆիլմերի կինոստուդիան նկարահանել է մի նոր ֆիլմ՝ նվիրված շարահերկ գյուղատնտեսական կուլտուրաների քառակուսի-բնային ցանքին և տնկմանը։ Հանդիսատեսը էկրանի վրա տեսնում է ժամանակակից մեքենաներ, որոնք կրճատում են կարտոֆիլի և բանջարեղենի մշակման աշխատանքի ծախսը, իմանում, թե ինչպես ագրոտեխնիկական առաջավոր եղանակները նպաստում են այդ կուլտուրաների բերքատվության բարձրացմանը։ Ֆիլմում ցույց է տրվում կարտոֆիլ տնկող ՍԿԳ—4 քառաշար մեքենան՝ աշխատելիս, իսկ մուլտիպլիկացիաները (նկարված կադրերը) պարզաբանում են այդ մեքենայի առանձին հանգույցների նշանակությունը։ Ակնառու կերպով ցույց է տրված նաև Ռամենսկի ՄՏ կայանի մեքենավար ընկ. Ակինֆիևի առաջավոր փորձը, որը անցյալ տարի կարտոֆիլ տնկող մեքենայով օրական տնկում էր պալարներ ավելի քան 12 հեկտարի վրա՝ նորմայով նախատեսված 8 հեկտարի փոխարեն։ Այդ տարածությունը ձեռքով տնկելու համար օրական կպահանջվեր 110*



*մարդ, մինչդեռ մեքենան սպասարկել են ընդամեն 3 մարդ։*

*Ֆիլմը բացատրում է, թե ինչպես ոչ կանոնավոր քառակուսիները հնարավորություն չեն տալիս մեքենայացնել կարտոֆիլի ցանքերի մշակումը երկու ուղղությամբ՝ երկարությամբ և լայնությամբ։ Կուլտիվատորը կարող է անցնել միայն այն տեղերից, որտեղ տնկման ժամանակ պատրաստվել են բացարձակապես կանոնավոր քառակուսիներ։ Հանդիսատեսը նկատում է, թե որքան շատ աշխատանք պետք է ծախսել դաշտերը ձեռքով մշակելու դեպքում, երբ ամռան ընթացքում պետք է կատարել երկու քաղհան, կատարել փխրեցում, բուկլից։ Տնկումը քառակուսի-բնային եղանակով կատարելու դեպքում այդ ամբողջ աշխատանքը կատարում են մեքենաները։ Կարտոֆիլի շարային ցանքի դեպքում բույսերի մշակման համար հարկավոր են հարյուրավոր մարդիկ, իսկ այնտեղ, որտեղ կարտոֆիլը տնկված է քառակուսի-բնային եղանակով և բանջարեղենը քառակուսի եղանակով, դաշտում չի երևում համարյա ոչ մի կոլտնտեսական։ Մեկ տրակտորիստը կարողանում է օրական կուլտիվացնել և մոլախոտերից մաքրել 12—16 հեկտար տարածություն։ Որպես եզրափակիչ պրոցես ցույց է տրված կարտոֆիլի մեքենայական բերքահավաքը ԿԿՌ—2 կոմբայնով, որը քանդում, հանում և տեսակավորում է պալարները։ Այդ մեքենան 10 անգամ տնտեսում է բանվորական ուժը։*





*Ագիտատո՛ր։ Ինքդ դիտիր այդ ֆիլմը և խորհուրդ տուր, որ այն դիտեն բոլոր կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները։ Ֆիլմը կօգնի նրանց հասկանալու, թե ինչու անհրաժեշտ է լայնորեն արմատավորել ցանքի ու տնկման քառակուսի և քառակուսի-բնային եղանակները, հնարավորություն կտա ավելի լավ յուրացնելու կարտոֆիլի և բանջարեղենի մշակման առաջավոր եղանակները։*

---


Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганди и агитации ЦК КП Армении

№ 4 1954 г.

**БЛОКНОТ АГИТАТОРА**

ՎՖ 08802 Պատվեր 206 Տիրաժ 8250

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։